Hafiz
Parsik banasteghtsutiun

ՏԱՐԱԿՈՒԹԻՒՆ



# ՀԱՖԸԶ

(ՊԱՐՍԻԿ ԲԱՆԱՍՏԵՂԾՈՒԹԻՒՆ)

## ՀՆԳԵԱԿՆԵՐ, ՔԱՌԵԱԿՆԵՐ
## * ՈՒ ՏԱՂԵՐ *

ԹԱՐԳՄԱՆԵՑ ՊԱՐՍԿԵՐԷՆԷ

**ՄԵՍՐՈՊ Վ. ՄԱՔՍՈՒԴԵԱՆՑ**



**1922**
Տպագր. Մ. Տէր-Սահակեան,
Կ. Պոլիս

Hafez, at Wikipedia

At Internet Archive:

Hafiz. Fifty Poems, selected, translated, and annotated
by A. J. Arberry (Cambridge, 1974; reprint of 1947 edition).

Hafiz of Shiraz. Thirty Poems, translated by Peter Avery
and John Heath-Stubbs (London, 1952).

The Divan-i-Hafiz, translated into English
by H. Wilberforce Clarke (Bethesda, Maryland, 2007).

«Էս կրակից, որը կրծքիս
Ծալքերումն է բռնկուած .
Արեգակը լոկ մի բոց է
Երկնքումը բռնուած . . . ։»

ՀԱՑՐՋ



## ՀՆԳԵԱԿՆԵՐ

Հո՛գիս, քո սիրուդ էնպէս եմ էրուած
Որ չեմ իմանում ո՛ղջ եմ թէ մեռած.
Ճիշտ է որ լալուց հոգիս է ելած,
Բայց ես քո սիրուն հազար ջան եղած՝
Հազարն էլ սուրբ ոտներիդ տակ եմ սփռում։

Ո՞ւր էր լինէի էնքան երջանիկ,
Որ սրտիս վշտերն ու ամէն գաղտնիք
Քեզ պատմէի լոկ, քեզ, ո՜վ իմ քաղցրիկ,
Մի օր, երբ շահէնըդ չնաշխարհիկ՝
Գայիր պատուել քունիկս անշուք ու տրտում:

Կամար ես կապել մօտկից ու հեռուից
Թուրքի ու Տաճկի արեան վերեւից.
Թէ չես ախորժում իմ նեղ խուցերից,
Ասում ես մութն են, քեզ համար, ա՛նքիծ,
Տե՛ս, լուսաւոր աչքումս եմ գահ պատրաստում.

Ինչքան էլ սիրես զրկանք, հալածանք,
Լաւ բան չէ, հալխին քիչ տուր չարչարանք.
Ասենք քո սիրտն է երկաթ. քարահանք.
Բայց մի էլ, անգութ, տես իմ տառապանք.
Ձեր տան շեմքի հողն եմ դառել. չե՞ս խղճում։

Քեզ համար լացի, քեզ համար մեռայ
Յուսով որ մի օր գթաս իմ վերայ.
Սէր դրոշմեցիր հէք սրտիս վերայ,
Այժմ չե՞ս ուզում, որ սիրտս հովանայ.
Էս իմ բախտի խաղերն ես եմ ճանաչում:

Խնդրում եմ քեզնից ուխտած սէրդ յիշես,
Ծաղկանց մէջ սիրոյ վարդն եմ սիրում ե՛ս,
Տեսնո՞ւմ ես ի՛նչպէս ծառայում եմ քեզ.
Գաղտնիքներդ միայն ես գիտեմ ու ե՛ս,
Գեղեցկութիւնդ ոչ ոքի մօտ չեմ պատմում։

Թող նայուածքըդ ինձ սլաքներ տեղայ,
        հոգիս ձեռումդ գերու պէս դողայ.
Երբեք քեզանից հեռու չեմ գնայ.
Քեզ թողնելը իմ հաշուին ձեռ չի տայ.
Ուրիշ բան երբ հոգիս մարմնիցս է մեկնում։

Ասենք թէ ուխտի զրահն հանեցինք
Չէ՞ որ նոր սիրոյ նոր ուխտ կապեցինք,
Ի՞նչ շուտ մոռացար ինչ որ արեցինք.
Չէ՞ որ ես ու դու բարեկամ էինք.
Դո՛ւ ես դրժում քո ուխտը, ես չեմ դրժում:

Թէ հատու սրով գլուխս հատանես,
Քո սիրոյ դրախտից չեմ հեռանալ ես.
Թէկուզ ինձ մորթես, հազար մաս անես.
Սէրդ սրտիցըս չեմ ջնջելու ես,
Ուրիշ բան թէ փշրին ոսկրերըս շիրմում։

Ովքեր նշան են որոնում ուխտի.
Թող բռնեն ուղին իմ գերեզմանի.
Հենց որ հոտոտեն հողն իմ տապանի.
Հենց որ անունովդ մէկը ինձ ձայնի,
Հոգուցս մի ձայն է գալու—օգնութի՜ւն:

Թէ տեսնեմ խումբ խումբ սիրուն աղջիկներ,
Բոլորն էլ չքնաղ որպէս աստղիկներ,
Քեզնից զատ ոչ-ոք չի կորզիլ իմ սէր,
Ես քո Մէջնունն եմ, դու իմ սրտի տէր,
Ա՜յ իմ Լէյլի, չկայ հատըդ աշխարհում:

Հո՛գեակ քո սիրուց մեռայ ես, մեռա՜յ,
Քեզ համար ուշքից ու սրտից եղայ,
Ձեր գեղը գալու անկարող եղայ,
Բայց ամբողջ գիշերն էնքան լաց եղայ,
    լացիցս ողջ երկիրն էր սարսռում։

Դու որ կաս դո՛ւ ես աղբիւր խնդութեան,
Սրտիդ փափաքներն լցուին յաւիտեան,
Պատմիր գաղտնիքներդ Հաֆըզիս միայն.
Ինչ որ տաս պատուէր, ինչ որ տաս հրաման,
Նոյնիսկ կեանքիս գընով կը տամ կատարում։—



## ՔԱՌԵԱԿՆԵՐ

Աչքիս առաջ փայլողը միշտ քո գեղն է,
Ճանապարհին հանդիպածըս ձեր գեղն է,
Հալխի աչքը տեսնում է քաղցր, անուշ քուն,
Ես եմ անքուն, էդ էլ, անխիղճ, քո մեղն է:

Կեանք է գինին, վեր կաց, վազիր շիշը բեր,
Բայց զգոյշ աց որ չտեսնեն չար աչեր.
«Մի՛ խմիր»ը Թշնամու խօսք է, չլսես,
Դու ինձ աշիր, վեր կաց, ջանըս, շիշը բեր

Էն օրը որ բաժնուեցայ ես քեզնից,
Ժպիտն անուշ խոյս տուեց իմ շրթներից,
Ա՜խ, ի՞նչ ասեմ. մէկ ես գիտեմ մէկ Աստուած,
Թէ սրտումըս ի՛նչ դարդեր կան ի՛նչ կսկիծ.

Եարիդ կողքին նստիր գինի պահանջիր,
Վարդ Թշերից անուշ անուշ մէկ պաչիր.
Եարալո՞ւ ես, ջառա՞հ է քեզ հարկաւոր,
Քո ջառահը անուշ եարդ է, մէկ կանչիր։

Օր ըմ դառայ ընկերտացըս ասացի.
Թողնենք գինին հենց որ վարդը կը բացուի.
Բլբուլն եկաւ չամանիցը ինձ ասաց.
Սրան տես հալա գինին վարդից կը բաժնի:

Երնեկ էնոր, որի ղըբլէն ծեր գեղն է,
Թէ խելք ունի, սրտի աչքը քեզ կ'ուղղէ.
Մարդ որ էսօր երեսը շուռ տայ քեզնից.
Ի՞նչ երեսով էգուց էլի քեզ տեսնէ։

Է՜յ ջան, զիւլֆիցդ արեւն անգամ մթագնեց,
Տանհինգօրեայ լուսնեակ դէմքըդ լոյս ծագեց.
Աշկահոտ խաւռդ երեկոյեան ալամդար,
Լուսաբացին լոյսը լուսնիցդ ամաչեց։

Ուրախութեան սէրը սրտէս վերացաւ.
Էս օր անգին ընկերս ինձնից հեռացաւ.
Գինի չկայ. ուշս ու միտքըս վրաս չէ.
Ա՜խ, գինի կայ... ընկեր չկայ սրտացաւ:

Փէրի եարըս ջանիս դուշման է դառել.
Փէշու նման ինձնից երեսն է կաղել.
Բերանըդ նեղ, ոչինչ բան է, ասացի.
Որ ոչինչ է, ասաց. սիրտդ հէ՞ր է դաղել:

Սիրունութիւնդ լեզուով պատմել չի լինի,
Սրտիս արիւնն ղդրով չափել չի լինի.
Զիւլֆիդ միջին սիրտըս ղարիբ է թշուառ.
Խեղճ ղարիբիս հալը ասել չի լինի:

Դու լի լուսնեակ արեւ ծառադ է դառել,
Ծառադ դառել, դէմքին ցոլքեր է առել,
Արեւը լոյս, լուսնեակն ունի պայծառ շող.
Նրա՛ համար որ երեսիցդ են լոյս առել:

Սիրուդ ցանցում սրտիս դուշն է բռնուած,
Սրտիս վզին քո սիրոյ սուրն է խրուած,
Սիրուդ թասով սրտիս արիւնն եմ քամում.
Շաբբաթիցը սիրտըս վաղուց է զզուած:

Զիւլֆերիդ կեռն հիմի որ ձեռս է անցել,
Սիրտս ուզում է շրթներիդ էլ համն առնել.
Նեզ փուստուղդ սրտիս պարէնն է միակ,
Հիւանդ սրտիս պարէնն ի՛նչքան է պակսել:

Ձեր թաղումը թափառականը ես եմ,
Քո աչքումը օտարականը ես եմ.
Սեւ մազերիդ շղթայից կախ եմ ընկել
Նրա համար որ խելառականը ես եմ:

Եարիս պէս եար, նազլու, դիլբար, հեչ չկայ,
Սիրտըս էրող բոց կրակին վերջ չկայ,
Բերնով բուստուղ, դէմքով լալէ, ջանն արծաթ,
Լեզուն անուշ, ծղիքը լոյս, հեչ չկայ:

Գինի խմիր, յաւերժական կեանքն էս է.
Էս անցաւոր աստուորիս բանն էսպէս է.
Վարդի կողքին եարդ գինի է խմում,
Քէֆըդ նայիր, եղած չեղածը էս է:

Պայծառ երեսդ անբիծ հոգուդ հայելին,
Սպասում եմ յիշողութեանդ քայլերին,
Որ, երբ զարթնեմ, կոխ տան աչերս, բայց աւա՜ղ
Փուշեր շատ կան թարթիչներիս ծայրերին:

Ն[illegible] ասաց, բաժակը ինձ երկարեց․
[illegible]արբեցի, վշտերի ցանց ինձ լարեց.
[illegible]ս կրակից երկու աչքըս ջրով լի՝
Փո[illegible] դառայ, ընկայ ոտքը... տրորեց:

Մի վարդ ունիմ, եարիս մօտիցն է գալիս
արդ ունիմ, սրտիս բերկրանք է տալիս,
ա ր դ ունիմ, ձեռիցս բաց չեմ թողնում․
Նրա հոտից եարի՛ս հոտն է ինձ գալիս:

չ ոք եար գրկին արժան չի դառել,
Թ՛է իր փողը, սիրտն ու ուշքը չի վառել.
Ես անփողըս մի եար ունիմ ծովաչեր,
Գոհար թէկուզ խօսքիս ականջ չի արել:

Լաւ մարդու հետ վատթար ու չար մի՛ լինիր.
Լեռնից իջած անբան, հրէշ մի՛ լինիր,
Մարդ իր օրուայ հացովը գոհ չի լինիլ.
Թեթեւամիտ, ինքնահաւան մի՛ լինիր։

Աղբի՞ւր տեսար, ափին գինի վայելիր,
Հոգսե՞ր տեսար, երեսն անգամ մի՛ նայիր.
Էս մեր մեանքը, ազիզ կեանքը, տասն օր է․
Ժպիտն ու վարդ երեսիցդ մի վանիր։

*Մինչեւ երկինք յայտնէ իր կամքն ու վճիռ,*
*Դու վայելիր կեանքի բարիքն ու հրճուիր.*
*Երաշխիքը յաւերժական էն կեանքի*
*Էն մի բաժակ գինին էր որ ինձ տուիր։*

*Կոկոն վարդը նոր տիկեր է բաց անում:*
*Նարկիսն հրճուում, բաժակներ է պատրաստում*
*Երնեկ էնոր, որ իբրեւ մի պղպջակ.*
*Բարձրագլուխ գինետան դուռն է բաղխում*

*Եարիս զիւլֆում թշուառ սիրտս տեղ ուզեց,*
*Փործանքների կապանքից դուրս գալ ուզեց.*
*Հոգիս մատաղ արի եարիս յօնքերին,*
*Երբ պահնորդը անգին քարի վարձք ուզեց:*

*Ոսկով է մարդ սիրուններին ձեռք բերում,*
*Պտուղները անուշ անուշ վայելում.*
*Նարկիսից էլ հպարտը խօմ էլ չկայ,*
*Տես նա էլ է ոսկուն գլուխ խոնարհում:*

*Քո տան ճամբէն դարդերի փուշ շատ ունի.*
*Ո՞վ գայ մօտդ, ոտքը փշից կ'արիւնի.*
*Գիտե՞ս ո՛վ է իմաստունն ու խելացին՝*
*Ում դէմքին որ կարասն իր ճրագը ունի:*

*Էն օրը որ քեզնից պիտի հեռանամ,*
*Կարօտիցըդ համբերութիւնս մոռանամ,*
*Թէ աչերըս դառնան նային ուրիշին,*
*ունութիւնդ վկայ որ ես քոռանամ։*

Գիւղապետի է՛ն հին գինուց բեր ինձ տուր,
Էս մեր կեանքի կարպետի ծէրը ինձ տուր.
Գինի տուր ինձ, ուշս ու խելքս գլխիցս առ,
Ես քեզ ասեմ ուստ ես գալիս, գնում ես ուր։

Անուշ լեզուն իր խոստումը չյիշեց.
Հեռատեսն իր հոգին սիրուց չփրկեց.
Որ սիրուհիդ լսեց քո իղձն ու աղերս,
Քո անունը էլ մեր միջում չյիշուեց։

Գինուց ծոմերն հարբողներիս է՛ս կասեն,
Թէ ոնց մեռնին, հէնց էնպէս էլ պիտ յառնեն.
Գինի ու եա՛ր, հենց մեր ուզածն էլ էդ է,
Որ երբ յառնենք, դրանք էլ մեզ հետ միշտ յառնեն:

Իմ տիրուհին նա է, որը սէր ունի.
Սրտի վզին սիրուց գործած քէռ ունի.
Դու ի՞նչ գիտես սէրը ինչ է, սիրողն ինչ.
Էս բաժակը քէզպէսներին խեր չունի։

Աշխարհիս փառքն իր զրկանքներն չարժէ,
Ողջ վայելքը իր տանջանքները չարժէ,
Եօթը հազար տարիների բերկրանքը
Մի շաբաթուայ վիշտն ու ցաւերը չարժէ:

Ժամանակ է. ելէք. եա՛րեր, քէֆ արէք.
Գինի ու եար, դափ ու տաւիղ ձեռք առէք.
Ոչինչ չի մնալ էս անցաւոր աշխարհից.
Ի զուր տեղը գինին խարաբ մի անէք:

*Խեղճ դէրվիշիս անտէր թողար գնացիր․*
*Խոց չիգէրիս վրէն նոր աղ ցանեցիր․*
*Վախում էի մի օր թողնես հեռանաս,*
*Հենց էդ օրը բերիր առաջս հանեցիր։*

*Ես տխուր եմ, ակնարկդ ընկնի թող վրաս.*
*Զնչին շիւղ եմ․ շողքըդ ընկնի թող վրաս․*
*Թէ լինիմ հող, ընկնիմ ոտքըդ. ծէն չտաս,*
*Զէ՞ որ հող եմ, ծէնդ չընկնի թող վրաս։*

*Թէ ընկեր է, իր խոստումը պիտ յիշէ,*
*Թէ ճամբորդ է, ճամբին փէշերը թրջէ.*
*Մէն մի գիշեր միւս օրուան յղին է,*
*Բայց թէ ումից, մեզնից ոչ ոք չգիտէ։*

*Կամ վիրաւոր սրտիս իղձը կատարուի*
*Կամ սրտիս դուշն հոգուս հրեշտակին փարի*
*—Իմ խընդիրքըս Աստուածանից էն է որ*
*Երջանկութեան դռները ողջ բաց անի։*

*Որ խելառ բախտդ անողոք է, ի՞նչ օգուտ.*
*Որ թշուառ սիրտդ արխնոտ է, ի՞նչ օգուտ․*
*Աչքիդ բիբը աչքիցդ եկաւ հեռացաւ․*
*Որ աչքիդ բիբն աչքումդ չէ, ի՞նչ օգուտ։*

*Գարնան մէջ ես, գինու բաժակն առ քամիր,*
*Վշտնե՞ր ունիս, գինին խմիր քայքայուի՛ր,*
*Ողջ աշխարհն է քայքայուած ու քայքայուած,*
*Էս քայքայուած տեղում դո՛ւ էլ քայքայուիր։*

Հեղեղ պատեց էս մեր կեանքի աւերին.
Ջի խնայում ոչ վատին ոչ լաւերին.
Ժամանակը գող է դառել. մտել տունդ.
Վե՛ր կաց, պա՛րոն, հսկիր տանդ կահերին:

Ճար չունէի, կախ ընկայ իր սմբուլից,
Ասացի. ես սէվտալու եմ, խղճա՛ ինձ.
Թո՛ղ զիւլֆս ասաց, տաք տաք կպիր շրթներիս,
Խի՛նդ որոնիր, ո՛չ թէ ամեր տաղտկալից:

Էս գիշեր ողջ՝ քունս սիրուդ ծախեցի,
Թարթիչներիս ծէրովն յակինթ ծակեցի.
Դարդերս որ ոչ ոքի չէի ասել,
Մինչեւ ի լոյս թշուառ սրտիս պատմեցի:

Ը՛նկեր, սիրտըդ ամէն մարդու մի՛ բանար,
Տեղըդ նստիր՝ լաւ դինուց ետ մի՛ կենար.
Օձիքդ բաց միայն խելօք մարդկերանց,
Անխելք մարդկանց մի՛ երբեք, մի՛ մօտենար:

Աչքըդ կախարդ, կախարդուսոյցն ի Բաղդադ,
Իրա՛ւ որ իր կախարդանքին չկայ հատ.
Էդ զիւլֆըդ որ օղն է չքնաղ ականջիդ,
Իմ էլ երգի գոհար գինդն է, ջա՛ն կախարդ:

Նայէ՛ր, օրհնած վարդին չքնաղ չամանում.
Ամպից արտասուք՝ վարդից ժպիտ է ցայտում.
Նոճին նոյնիսկ որ նազում է իբր ազատ՝
Ուղիղ կանգնած՝ վարդին է լոկ ծառայում:

Էդ մշկապատին հենց որ լանջն էր բաց անում
Տեսանք որ ճիշտ՝ զուր տեղը չէր նազ անում.
Կուրծքն է՛նքան նուրբ՝ սիրտն երեւում էր տակից
Ոնց որ աւազ զուլալ ջրի յատակում։

Չի՛ գիլի մոմ, ինձ իսկի ուշ չես անում.
Թէ կայ մի բան՝ որից երկիւղ եմ անում.
Էդ քո սիրուց կրած վիշտս է որը ես,
Ես ու սիրտս սիրտս ու ես ենք իմանում:

Եարիցը խեր ո՞վ տեսաւ որ ես տեսնեմ.
Վշտիցը դիւր ո՞վ տեսաւ որ ես տեսնեմ.
Կեանքս դու ես ու խեր չունիս, ի՞նչ արած.
Կեանքիցը խեր ո՞վ տեսաւ որ ես տեսնեմ:

Գինի խմենք, սիրտներս մէկ հովանայ.
Հին օրերի ցաւն ու դարդը մոռանայ.
Մարմնի բանտում բանտարկուած էս հոգուց
Գէթ մի րոպէ խելքի շղթան թուլանայ։

Ջուարճութեան ղո՞ւշն է տեսնես թեւ սըրում
Թէ ամօթղած վա՞րդն է բոյրերը սփռում,
Թէ զեփիւռն է լուր բերում նրա շրթներից.
Չեմ հասկանում, էսպէս բան նոր եմ տեսնում:

Էս գիշեր ողջ, հո՛գեակ, քեզ հետ լուսացրի.
Առանց քեզ իմ կեանքիս լոյսը կը մարի.
Դրանից յետոյ էլ ինչ վախեմ մահուանից.
Կեանքի ջուրը կեանքի աղբիւրիցդ առի:

Համբոյրիդ ու գրկիդ սիրուն մեռայ ես,
Թարմ շրթներիդ վառ կարօտուն մեռայ ես,
Կարճ ասեմ քեզ, շատ խօսելուց խեր չկայ,
Արի՛, արի՛, քեզ սպասելուց մեռայ ես:

Քեզ թողնելն ինձ անհնար է, հո՛գի ջան,
Մինչեւ հոգիս զմրուխտ յօնքիդ զոհ չտամ.
Էդ շրթներիդ յակինթն հոգուս պարէնն է,
Ո՞վ կը թողնէ, թէկուզ միլիոն մարջան տան։

Ես կեանքիցս վշտից զատ խեր չտեսայ,
Եա՛ր, քո սիրուց վշտից խեր չտեսայ.
Չեղաւ մէկն ինձ համախորհուրդ, համաշունչ.
Վշտիցս զատ այլ մտերիմ չտեսայ:

Ա՜յ իմ զեփիւռ. դո՛ւ նրան պատմիր ողջ սէրըս,
Նա չի տեսնում իմ կոծերս ու ողբերըս.
Գիշերն ի քուն պառկած նազի որրանում
Չի տեսնում, որ անփա՛կ են իմ կոպերըս։

Հոգիս ելաւ անծայր ուղիդ չափելով,
Հերի՛ք ծածկես արեւ դէմքդ սեւ քօղով.
Ա՛յ թամահքեար, թէկուզ մտնես շիշի մէջ,
Գերեզմանի որսն ես էլի Աստուծով·

Ասում են թէ դրախտումը պիտ լինի
Յաւերժահարս ու անապակ հին գինի.
Գինի ու եար, եար ու գինի, էլ ի՞նչ կայ.
Որ էդպէս է, հիմիկուանից թող լինի։

Ա՛յ ամօթղած, խինդն սքօղուում է քեզնից,
Ա՛յ աննման, նարգիսն ակն ածում քեզնից,
Դո՞ւ որտեղ ես, վարդը որտեղ, վարդի լոյսն
Է լուսնեակից, լուսնեակի լոյսը քեզնից։

Մի վարդ տեսայ գահի վրայ արքունի,
Իմ հալն, ասաց, անցորդներին է յայտնի.
Ես մի անմեղ մանկիկ եմ ու այրուում,
Վա՛յ նրան որ ծեր է ու մեղք շատ ունի:

Վարդը ասաց. ա՜խ թէ հնարըս լինէր։
Կը փախչէի, թէ ճանապարհըս լինէր,
Դեռ մեղ չունիմ որ էրում են ինձ էսքա
Վա՜յ ինձ, թէ որ մի քիչ էլ մեղըս լինէր:

Երբ մեզ նման դու էլ էս ցանցը ընկնիս,
Գինու ձեռից պիտի փտիս, քայքայուիս.
Մենք սիրող ենք, մենք լոթի ենք, մենք հարբող,
Մեզ մի՛ մօտ գալ, որ պատուիցդ չը լինիս:

Հերի՛ք, Հա՛ֆըզ, ինչքան երգ էր երգեցիր,
Հերի՛ք ինչքան կեղծեցիր ու նենգեցիր,
Քիչ էլ լռի՛ր, լռելուդ ժամն հասել է.
Քիչ դադար առ, քիչ էլ գինուդ տէր կեցիր:





# ՏԱՂԵՐ

Միշտ նոր ու նորից երգիր աշուղ ջան,
        քո երգն է սիրուն.
Միշտ նոր ու նորից հետամուտ եղիր
        սիրտ բացող գինուն։
Միշտ նոր ու նորից համբոյրներ խլիր,
        ինչքան որ կ'ուզես.
Երբ սիրելուհուդ մթութեան գրկում
        պահ մի ողջունես:
Միշտ նոր ու նորից քամիր բաժակներ
        կենացը եարիդ։
Որ գինի չունիս, զուր են անց կենում
        օրերը կեանքիդ:
Միշտ նոր ու նորից բոյրեր արձակում,
        գեղովը պանծում,
Իմ գեղեցկուհին փայլում է, փայլո՛ւմ,
        սրտիկս պատռում։
Միշտ նոր ու նորից պատմիր Հաֆըզիս
        իղձերը նրան,
Ձե՛փիւռ ջան, դու էլ երբ ոտք ես դնում
        իմ փէրու վրան։

*Արի՛, հո՛վիկ, խաբրիկդ անոյշ, գալըդ լինի մեզ բարի.*
*Սիրողներիս սիրտն էրուած է կարօտովը մեր եարի:*
*Ա՜խ, ո՞ւր է, ո՞ւր, անգին եարըս, անոյշ եարըս երկնառաք,*
*Եւ դուք, ը՛նկերք, եւ դուք, դրա՛ցիք, ո՞ւր էք, ո՞ղջ էք թէ մեռաք,*
*Մեր տեսութեան ողջ վայրերը ձեզնից թափուր են մնացած,*
*Մինչդեռ գինին կարասներում ձեզ է սպասում հնացած*
*Առանց ձեզ իմ համեստ տնակն անապատ է ամայի.*
*Մի լուր բեր ինձ սիրուն հովիկ. դրանց վիճակից մի առմի*
*Սփռեց գիշերն իր ստուերը, սեւ գիշերը բաժանման.*
*Է՛լ ո՞ր քարի տամ իմ գլուխն ես ուղեւորս գիշերուան:*
*Սիրո՛յ կեանքի պատմութիւնն է ե՛ւ անընդհատ ե՛ւ անվերջ.*
*Հարուստ, աղքատ, ուրախ, տխուր, մի մաս ունին նորա մէջ:*
*Մի եար ունինք մենք սիրողներս, է՛ն էլ գոռոզ մեր բախտից.*
*Ա՜խ, դրա ո՞ր արարքն ասենք, անցաւ չափ ու սահմանից*
*Բարե՛ւ, հո՛վիկ, բարե՛ւ հո՛վիկ, անոյշ եարիս դու բանբեր*
*Արի՛, արի՛, քեզ հովանի, քեզ պահապան լինի Տէր:*
*Բայց մինչեւ ե՞րբ, ա՜յ խեղճ Հաֆըզ, սիրես տոկաս, կողկողես.*
*Սիրողների լացն անոյշ է. լացիր, ինչքան կարող ես։*



*Հոգեակ, սիրտըս շրթներիդ է սէր տածում.*
*Ուզա՞ծն ինչ է—եարաբ, ինձ էլ չի ասում:*
*Սրտիս խորքում մի կթղայում լի ու լի*
*Հոգիս սիրոյ 'ւ ուխտի գինուց միշտ ունի:*
*Ովքեր ինձ պէս եարի զիւլֆին են գժուած.*
*Փորձանքների հաղբիցը դուրս չեն պրծած։*
*Ա՛խ, որ մօտըս չի էլ գալիս, ո՞նց հարց տամ,*
*Թէ դիլբարիս անունն ի՛նչ է, իմանամ:*
*Ո՞նց ես նստում եարիդ կողքին գէթ մի հեղ,*
*Երբոր եարըդ քեզ չի դնում բանի տեղ.*
*Երնեկ էնո՛ր. որ իր եարից անբաժան՝*
*Երջանկութեան պարն է պարում ամէն ժամ.*
*Վարդի վրայ մանուշակից վարմ ունի,*
*Կա՛ց, սրտիկըդ որս չըլինի, չարունի:*
*Հա՜փըզն ամէն ժողովներում խնդագին*
*Հրճուանքների շորն ունի միշտ իր հագին:*



*Էլ ի՞նչ վարդ. երբ եարի երես չը լինի.*
*Էլ ի՞նչ գարուն, երբոր գինի չը լինի:*
*Էլ ի՞նչ դալար, ի՞նչ դալարիք, ի՞նչ ծաղկունք,*
*Լալէերեան երբոր հետըդ չը լինի։*
*Էլ ի՞նչ նոճու, ի՞նչ վարդենու խաղ խնդում,*
*Երբ հազարան բլբուլի ձէն չը լինի:*
*Վարդի մարգի բուրաստանը լաւ է, բայց*
*Ի՞նչ խեր, երբոր եարըդ էնտեղ չը լինի։*
*Խելքդ ի՛նչ կ'ուզէ, թող նկարէ, ի՞նչ նկար,*
*Երբ նկարում էն նիկեարդ չը լինի։*
*Եարիդ կողքին, շաքարաշուրթ, վարդերես,*
*Ի՞նչ խեր, երբոր գիրկ ու համբոյր չը լինի:*

Իմ խղճն է որ սրտիս հալը քեզ պատմեմ,
Իմ խղճն է որ սիրող սրտից լուր առնեմ.
Խելքիս աշխը, է՛ն որ պարզ է ու յայտնի,
Իմ խղճն է որ դխտողներից թաքցնեմ։
Կաղիր գէջէն, նուիրական եւ վսեմ,—
Իմ խղճն է որ քեզ հետ լինիմ լուսացնեմ։
Արի՛, հո՛գիկ, էդ գիշերն ինձ օգնութեան.
Իմ խղճն է որ առաւօտ վաղ թարմ բացուեմ,
Ի՛մ իսկ պատուին թարթիչներիս ծէրովը
Իմ խղճն է որ ճանապարհիդ հողն աւլեմ։
Ես Հաֆըզն եմ. ոտխներիս միշտ ջիգրու
Իմ խղճն է որ այսպէս ուրախ երգ ասեմ:



Թէ ձեր թաղից բերէ զեփիւռն ինձ մի բոյր,
Ողջ աշխարհի հոգին կը տամ տրխտուր:
Դու իմ կեանքի երկար փոշին հանեցիր,
Բայց էդ փոշին փէշիցդ հեռու վանեցիր:
Դու, ա՛չքիս լոյս, փակեցիր դուռդ երեսիս,
Եւ է՛լ խնդի չեն բացում դուռ մ'երեսիս:
Արիւն դէմքիցդ արիւն կաթեց էս աչքիս.
Աւեր զիւլֆիցդ աւեր պատեց էս կեանքիս։
Աչքումս ես միշտ ու աչքիս չես երեւում,
Ոչ յիշում ես, ոչ ուշիցս ես հեռանում:
Թէ թշնամին սուրն էլ հանէ, խփէ ինձ,
Ես ուխտել եմ ձեռ չքաշել քեզանից։
Միրուդ ձեռից չի տայ Հաֆըզն իր հոգին,
Ինչպէս Յարման, որին տանջում էր Տիրին:



Դուրս մի՛ գալ սիրտ իմ, էն ծնոտի նորից,
Թէ չէ՝ ուր գնաս, կը զղջաս նորից։
Ուշի՛մ կաց, խելքի՛դ ականջ շատ չանես,
Որ Ադամի պէս դրախտից չը հանուես։
Մինչ ե՞րբ հովի նման կեանք շնչեմ քեզ ես,
Որ ծաղիկի պէս զուարթ կոկոնիցդ ելնես։
Տե՛ս, մութ գիշեր է, լո՛ւսնեակ դուրս արի,
Կարօտուդ յանկարծ հոգիս չը մարի։
Հոգեսու ժպտիդ հոգի եմ տալիս,
Իցի՛ւ իբր արեւ դուրս գաս ու փայլիս։
Թէ ծարաւ դուրս գաս կեանքի ակերից.
Աշխարհ ջուր կը տայ քեզ իր աչերից։
Մինչեւ ե՞րբ նստիս էդ վշտաց տան մէջ,
Ե՛կ. բա՛ց դռնակը հրճուանաց անվերջ։
Երեսս ի հող մած, աչքումս առուակներ,
Իմ շրջուն նոճի, կամ դռնակդ ի վեր։
Հերի՛ք լաս. Հա՛մբրզ, կը գա՛յ ուր որ է.
Էս վշտի հիւղից դուրս գալուդ օրն է։
Գրի՛ր, սի՛րտ իմ, գրի՛ր եարիս մի թղթիկ,
Թղթիկդ յղիր անսիրտ եարիդ, ի՛մ սրտիկ։
Արի՛, զեփի՛ւռ, թղթիկ մ'ունիմ, եարիս տար,
Ասա՛, մեղք է, շուտով արա եարիդ ճար։
Մինչեւ էսօր չունիմ ոչ մի պատասխան.
Ձնայած ես հազարնե՛րն եմ գրել իրան։
Որ անունդ սրտումը մէկ դրոշմի,
Է՛լ յաւիտեան, սի՛րտ իմ, փառքդ չի՛ թոշնի.
Գրի՛ր, սի՛րտ իմ, գրիր սիրոյ մի թղթիկ,
Խեղճ Համբրզիս պատմիր վշտերն, ի՛մ սրտիկ։

*Ի՞նչ հասակ... հոգի, հոգի՛ է համակ.*
*Ի՞նչ երես... քեզ պէս չծնաւ աշխարհք:*
*Երես չէ վարդ է, վարդերից դրախտի,*
*Հասակ չէ, ազատ սօս է կամ բարտի:*
*Պատմել չի լինիլ, հո՛գեակ քո այդ գեղ,*
*Պէտք է մեզ տեսնել, զմայլել մի հեղ:*
*Մարմինս աչքիդ պէս հիւանդ, նըւաղած,*
*Սիրտս զիւլֆիդ պէս ցիրուցան եղած.*
*Քեզ որոնելուց նստել չեմ ուզում,*
*Արիւն արտասունքի գիրկն ես ինձ սուզում,*
*Ոտքիդ սուրբ հողից ես շուռ չեմ գալիս,*
*Անջատիչ ձեռովդ ինձ շուռ ես տալիս:*
*Դու էլ երկնի պէս սփռում ես վիշտ, ցաւ.*
*Չես ասում. օրըդ ի՛նչպէս սեւացաւ:*
*Մինչ ե՞րբ սպասեմ որ գթաս, հո՛գեակ,*
*Հաֆըզիս ցաւին մի՞թէ չես տեղեակ:*

